Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ Կենտկոմի Արդյունաբերական արտադրության և շինարարության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

ՀԿՊ Կենտկոմի Գյուղատնտեսական արտադրության ղեկավարման բյուրոյի գաղափարական աշխատանքի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՀՈՒՆՎԱՐ 1 1963






## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





---

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

СОДЕРЖАНИЕ







Адрес редакции — Ереван, ЦК КП Армении, II этаж, комната 71, телефон 2-52-78.



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ՊԱՐՏՔԻ ՄԱՍԻՆ

Ն. ՍՈՐՈԿԻՆ

Ագիտատոր, Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինական գործարանի փականագործ

*Վերջերս ես մի նամակ ստացա։ Նայում եմ ծրարին՝ ծանոթ ձեռագիր է։ Դե սա հո Իոսիֆ Բուսիգի՞նն է գրում։*

*Հիշեցի, մի քանի տարի առաջ մենք նորոգում էինք շոգեմեքենաներ։ Աշխատանքն շտապ էր, հոգսաշատ։ Բայց մի րոպե կտրվում ես գործից, նայում՝ կանգնած է կողքիդ ոչ բարձրահասակ, ամրակազմ մի պատանի և նայում է ուշադիր։*

*Մեկ անգամ նա անհամարձակ հարցրեց.*

*— Քեռի Կոլյա, ուզում եմ ձեր տեղամասում աշխատել։ Ձեզ մոտ այնպես հետաքրքիր է։*

*Խորհուրդ արինք մենք վարպետի հետ և վերցրինք պատանուն...*

*Ես հավաքող փականագործ եմ։ Քառասուն տարուց ավելի է, ինչ աշխատում եմ գործարանում։ Եվ միշտ նույն ցեխում, նույն*

տեղամասում։ Առաջնակարգ շատ նավերի շինարարությանն եմ առիթ ունեցել մասնակցելու։ Մեծ երջանկություն է՝ տեսնել, թե ինչպես է նավաշինարանից իջնող նավն ուղևորվում լողալու։

Շատ հուզիչ է նաև այն վայրկյանը, երբ քո հավաքած մեխանիզմը լրիվ պատրաստ է հանձնման։ Նայում ես դու նրան, ոնց որ փոքրիկ մանկան։ Այն էլ ասեմ, երբ սկսում եմ հավաքումը, ապա բոլոր մասերը ձեռքերիս վրա այնպես եմ կրում, ինչպես դայակն է երեխային խնամում։ Լվանում ես դրանք, մաքրում, յուղում... Ախր այնպես ես ուզում որ նոր մեխանիզմը լինի առանց որևէ կոշտուկի, առանց քերծվածքի, լինի ամենից ամուրը, ամենից գեղեցիկը, նայես հիանաս։

Հարցրու ուզածդ հավաքող փականագործին և նա կասի, որ իր մասնագիտությունն ամենից լավագույնն է։ Ես նկատեցի, որ իմ նոր աշակերտն էլ է այդպես մտածում։ Ինձ ուրախություն էր պատճառում այն քնքշանքը, որով նա ձեռքն էր վերցնում դետալը։ Իսկ ես էլ մեկ-մեկ մտերմական զրույցի էի բռնվում նրա հետ։ Կամ պատմում էի, թե հին ժամանակներում ինչպես էի չարչարվում աշխատանքի բորսայում, կամ՝ մեր



գործարանի առաջին երիտասարդական հարվածային բրիգադի մասին, որը ղեկավարում էի ես, կամ Իտալիայում անցկացրած արտասահմանյան գործուղման մասին, որն ինձ հնարավորություն տվեց աչքով տեսնել կապիտալիստական «դրախտը»։ Պատմում էի այն հեռանկարների մասին, որ մարդկանց առջև բաց է անում կոմունիստական աշխատանքի համար մրցությունը։ Իսկ երբ կանգնում էինք դազգահի մոտ, անառարկելի խորհուրդս էր՝ կատարիր այս այսպես և կաշխատես ավելի հեշտ, արագ, արդյունավետ...

Օսյան բոլոր խորհուրդները ճանկում էր արագ, հիշում։ Կարճ ասած, նա դարձավ լավ փականագործ, անսահմանորեն, ինչպես մենք բոլորս, պարծենում էր իր ցեխով, գործարանով, բանվորի կոչումով։

Եվ ահա նամակ բանակից, ուր մենք նրան ջերմորեն ճանապարհել էինք։ Նախ, ինչպես կարգն է, ողջույններ ու ցանկություններ։ Իսկ հետո տողեր շատ կարևորի մասին։ Օսյան խնդրում էր երաշխավորություն տալ պարտիայի մեջ ընդունվելու համար։ «Դուք ինձ մեկ անգամ արդեն տվել եք երաշխավորություն՝ ճանապարհ բացել դեպի կոմերիտմիություն,— գրում էր նա։— Ես

շատ թանկ եմ գնահատում ձեր վստահությունը և ձգտում եմ ամեն բանում արդարացնել այն։ Ես պարտիայի մեջ եմ ուզում մտնել այն բանի համար, որ հավատում եմ նրա արդարացիությանը և ուժին. Ես ուզում եմ ծառայել պարտիայի գործին և, եթե պետք է, կյանքս կտամ պայծառ ապագայի՝ կոմունիզմի կառուցմանը»։

Ինչ խոսք, որ ես Բուսիգինին երաշխավորեցի։ Կարծում եմ, որ նա բանվոր դասակարգի արժանավոր սանն է։

... Կարդում եմ Բուսիգինի նամակը, իսկ գլխումս մի անհանգիստ միտք կա։ Ահա երբեմն լսում ես՝ վատ երիտասարդություն ունենք հիմա։ Ես երիտասարդությունից դժգոհ չեմ, ավելի շատ հիանում եմ նրանով։

Մեր գործարանի կոմերիտականները, օրինակ, վերցրել են օվկիանոսային հսկա, խոշոր տոննաժային «Սոֆիա» տանկերի և «Տեոդոր Նետտե» անտառանյութ փոխադրողի, ցուցադրական զոդող արտադրություն ստեղծելու, «մեծ քիմիայի» պատվերների շեֆությունը։ Զոդող արտադրության շեֆության համար նրանց երկրորդ տեղն է շնորհված միության մասշտաբով։

Բայց և այնպես պատահում են այնպիսի պատանիներ, որոնք խուսափում են սև աշխատանքից, թանկ չեն գնահատում բանվորի կոչումը... Ասենք պատանիներն ինչ...

Մեկ ուրիշը հենց ինքը, ընտանիքի հայր է, իսկ գլխում քամի է, նրան կյանքում գրավում է միայն փողը։

Որքա՜ն օտար է մեզ այդպիսի վերաբերմունքը։

Ես ագիտատոր եմ։ Պարտիան ինձ վստահել է մեծ, պատվավոր գործ՝ դաստիարակել մարդկանց, պաշտպանել կոմունիստական սկզբունքը։ Ինձ համար ծրիակերը, կաշառակերը, չվողը, խոտանարարը ոչ միայն անհանդուրժելի չարիք են, այլև գաղափարական հակառակորդ։ Իսկ հակառակորդների դեմ պետք է պայքարել, մերկացնել նրանց։ Ապա, հակահարված մի տուր նրան, ով սնացնում է այն ամենը, ինչ սովետական է, թքում է մեզ համար թանկագին ամեն բանի վրա, և կտեսնես ինչքան աղետ կբերի նա։ Մյուս կողմից, եթե ժամանակին չպաշտպանվի բարի նախաձեռնությունը, ապա կարող է թոշնել նաև առողջ ծիլը։

Երիտասարդության մասին լսվող բողոքները երբեմն նրանից չե՞ն արդյոք, որ մենք հաճախ, ինչպես հարկն է հոգ չտանելով նրա դաստիարակության մասին, ակամա կերպով «նիհիլիստներին» ու կաշառակեր-

ներին, հարբեցողներին ու գռփողներին թույլ ենք տալիս ներգործել չամրապնդված բնավորությունների վրա։ Իսկ հետո էլ ինքներս զարմանում ենք, որ խուլիգանությունը շատ է, աղանդավորները գործում են։

Կա այսպիսի ժողովրդական ասացվածք. «Ակուլյա, ինչո՞ւ չես կարում, որտեղից որ հարկն է»։ «Դե ես, հարազատս, դեռ պետք է քանդեմ»։ Մեր գաղափարական աշխատողներից ոմանք շատ նման են այդ Ակուլյային։ Նրանցից շատերը երբեմն շատ թափով են պայքարում ձրիակերների ու գռփողների դեմ, բայց այ փորձանք՝ օգուտը ոչ միշտ է շոշափելի։ Սկսվեց կամպանիան՝ կաղմկեն, ավարտվեց՝ ամեն ինչ լռեց։ Բայց չէ՞ որ գաղափարական աշխատանքի խոտանը հաճախ շատ ավելի թանկ է նստում, քան արտադրական խոտանը։

Իմ կարծիքով շատ ավելի էական է մշտական դաստիարակչական «պրոֆիլակտիկան»։ Սակայն «ակուլյաները» այլ կերպ են դատում։ Նրանք ժամանակին չեն հասնում մինչև յուրաքանչյուր մարդը, չեն դաստիարակում, իսկ հետո սկսում են վերադաստիարակել։ Այդպիսիները ուզում են հաղթել իրենց կոչերով՝ քաղաքական-մասսայական միջոցառումների «ընդգրկում-



ներով», նրանք երբեմն ուշք էլ չեն դարձնում այն բանին, որ այդ միջոցառումներին ամենից շատ հաճախում են միևնույն, առավել առաջավոր մարդիկ։ Իսկ որ հարյուրավոր մարդիկ մի կողմ են մնում քաղաքական ներգործությունից՝ այդ նրանց բոլորովին չի անհանգստացնում։

Ես ինքս հաստատ համոզված եմ՝ հարկավոր է ոչ միայն բուժել, այլև գլխավորապես կանխել հիվանդությունը։

Յուրաքանչյուր մարդու միտքն ու սիրտը ամրապնդել, կոփել դեպի ժողովուրդը, պարտիան ունեցած հավատարմությամբ՝ ահա թե որն է գլխավորը մեր՝ ագիտատորներիս գործունեության մեջ։

Չգիտեմ ով է առաջինը սահմանել այն սովորությունը, որ «ծանրաբեռնում» է համարվում ագիտատոր լինելու հանձնարարականը։ Վատ բառ է։ Բայց ինչու թաքցնել, ոմանք իրոք որ այդ աշխատանքը իրենց համար ծանրաբեռնվածություն, համարյա պարհակ են համարում։ Այդպիսի վայ-ագիտատորից սրտացավ վերաբերմունք մի սպասի։ Նա պարզապես «միջոցառում է անցկացնում»։ Նրա հոգը չէ, որ այն տեղամասում, որտեղ նա կատարում է իր «ծանրաբեռնվածությունը», ինչպես որ խո-

տան արտադրանք կար, այդպես էլ մնացել է, հաճախակի են դարձել գործալքումները և աշխատանքի այլ խախտումները։

Սա ի՞նչ է, եթե ոչ մաքուր ֆորմալիզմ։ Բայց չէ՞ որ այդպիսի փաստերը, դժբախտաբար, եզակի չեն։

Մեր 7-րդ ցեխը մի ժամանակ համարում էին գործարանի սիրտը։ Միջկոոպերացման կապերի զարգացման հետ նրա նշանակությունը նվազեց։ Բայց այժմ էլ նա առաջատարների թվումն է։ Մինչդեռ այդ ցեխը ձեռնարկության ամենից «նեղ տեղն» է։ Պլանը կատարում է մեծ լարվածությամբ, հաճախ գրաֆիկները խափանում է, հաստոցային սարքավորումներն այստեղ օգտագործվում են ոչ լրիվ կարողությամբ, երկրորդ հերթափոխում բանվորների պակաս կա։

Բանը ինչո՞ւմն է։ Ասում են, որ երիտասարդությունը շատ է։ Դրանումն է իբրև թե, ամբողջ ցավը, պատանիները փորձ, ամուր կոփվածք չունեն, դեռևս չեն եփվել բանվորական կաթսայում։

Արդյո՞ք այդպես է։ 13-րդ ցեխում նույնպես երիտասարդությունը շատ է։ Սակայն այնտեղ հաջողությամբ են կատարում իրենց տնտեսական և քաղաքական խնդիրնե-



րը։ Մրցության մեջ ցեխը համարյա ամեն ամիս առաջնակարգ տեղեր է գրավում, բոլոր տեղամասերում գնում է մրցություն կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչման համար, յուրաքանչյուր երկրորդ բանվորը սովորում է։ Կարծում եմ, որ ամբողջ տարբերությունը նրանում է, որ 13-րդ ցեխում լավ են հոգ տանում երիտասարդ բանվորների դաստիարակության, համոզմունքների, կազմակերպվածության մասին։

50-րդ ցեխում կա մի շատ զգայուն, կարեկից մարդ՝ վարպետ, ագիտատոր Նիկոլայ Գրիգորևիչ Լիզորկինը։ Երիտասարդ բանվորներին նա միշտ և՛ իր փորձն է հաղորդում, և՛ առօրյա, կենցաղային գործերում օգնում։ Եթե դժվարություններ են հանդիպել արտադրության մեջ՝ կօգնի դրանք վերացնել։ Այդպիսի վարպետի ետևից գնալը լավ է՝ չես սայթաքի, և՛ արահետ բաց կանի, և՛ վատ եղանակից կպաշտպանի, և՛ խոսքով կջերմացնի։

Լավ դաստիարակ է նավաշինարարների բրիգադիր, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Վասիլի Ալեքսանդրովիչ Սմիրնովը։ Նա պարտիայի XXII համագումարի պատգամավոր էր, ընտրված է ՍՄԿՊ Կենտկոմի անդամության թեկնածու։ «Մոտեցում ունե-

ցող մարդ» են անվանում նրան բանվորները սրտակցության, ընկերական ուշադրության համար։ Նավաշինարար Վլադիմիր Շատուրինը, որը փոխարինեց Սմիրնովին, երբ վերջինս Գագանովայի օրինակով փոխադրվեց ետ մնացող բրիգադ, այսպես է ասում նրա մասին. «Բալթիկայից փչող քամին բոլորովին էլ ցուրտ չի թվում, որովհետև հոգիդ միշտ ջերմ է։ Ջերմ այն գիտակցությունից, որ քո կողքին այնպիսի մարդիկ են, ինչպես Վասիլի Ալեքսանդրովիչը, իմ ավագ բարեկամները»։

Այդպիսի սրտակից մարդիկ կան նաև մեր ցեխում։ Օրինակ, խառատ Ալեքսեյ Վասիլևիչ Զուևը։ Նա գիտե կյանքը։ Ե՛վ ռազմաճակատում է եղել, և՛ աշխատանքում է կոփված։ Նա և՛ լավ դաստիարակ է։ Քանի-քանի մարդ է նրա մոտ վարպետություն սովորել, կյանքի ուղեգիր ստացել։ Եվ այն է ուշագրավ, որ Զուևը մշտապես ձգտում է, որպեսզի իր աշակերտները նույնիսկ ավելի լավ գիտենան գործը, քան ինքը։

Հմուտ դաստիարակ է վարպետ Վլադիմիր Ալեքսանդրովիչ Դյուկովը։ Նա իմ դազգահի մոտ եկավ պատերազմի ժամանակ, ագահորեն սովորեց, և ահա դարձավ մեծ տեղամասի ղեկավար։ Դյուկովը լավ գիտե մարդ-



կանց, նրանց ուժեղ և թույլ կողմերը. նա սրտակից, արդարամիտ մարդ է, և մարդիկ նրա մոտ են գնում բաց սրտով, վստահում են նրան։

Բայց չէ՞ որ այն էլ է ճիշտ, որ ոչ բոլոր ագիտատորների մասին կարող ես այդպես ասել։

Ասում են ինչքան մարդ՝ այնքան բնավորություն, կամ թե՝ «ամեն սիրտ իր բանալին ունի»։ Դա, իհարկե ճիշտ է։ Տարբեր մարդկանց նկատմամբ տարբեր մոտեցում է պետք։ Բայց կա մի այնպիսի բանալի, որը բոլոր սրտերին էլ հարմար է՝ սրտակցությունը։

Խոսիր ինչպես բարեկամ, ինչպես ընկեր, ինչպես հավասարը հավասարի հետ, քեզ խոսակցից խելոք և լավ ցույց մի տա։ Մարդկային ամեն մի սիրտ լի է չբացահայտված ուժերով։ Եթե ուզում ես արդարացնել ագիտատորի կոչումը, ապա մեղմորեն, առանց հարկադրելու օգնիր մարդկանց տեսնելու այդ ուժերը, օգնիր, որ բացահայտվեն մարդկային հոգու ռեզերվները։

Սրտակցություն և դարձյալ սրտակցություն՝ առանց այդ հիմնական բանալու ուրիշ ոչ մի «բանալի» չի օգնի։ Ցավն էլ հենց նրանումն է, որ մի քանի ղեկավարներ ու

վարպետներ, օրինակ մեր ցեխի, որոնց հենց պարտքն է դաստիարակներ լինելը, ոչ միշտ են սրտացավություն հանդես բերում, ուշադրություն մարդկանց նկատմամբ, ոչ միշտ են հաշվի առնում նրանց կարիքներն ու պահանջները։

Երևակայեցեք, գործարանից այս տարի հեռացվածների և հեռացածների կեսը մեր ցեխից է։ Նրանց մեջ կան և աշխատանքային կարգապահությունը խախտողներ, և՛ ուղղակի շվողներ, և՛ այնպիսինները, որոնք հեռացել են սեփական կամքով։ Սակայն մեր տեղամասից նրանց թվում ոչ ոք չկա։ Մեզ մոտ աշխատանքային կարգապահության խախտողներ էլ չկան։ Այստեղ, ինձ թվում է, խորհրդածելու առիթ կա։

Տեղամասում մենք ութ առաջավոր փականագործներ ենք, հինգը՝ կոմունիստական աշխատանքի հարվածային։ Ահա Իվան Բուվայլոն։ Առաջ ծառայում էր նավատորմում, այժմ նավեր է կառուցում։ Նրա կողքին Ֆեդյա Լիպովեցկին է, աշխատանքի նկատմամբ ունեցած իր անհագ կիրքով։ Ահա հնարամիտ Արկադի Գորելկինը։ Ահա իմ որդու Յուրայի դազգահը...

Առաջավոր փականագործների հետ միասին աշխատում են բրիգադի անդամները,



աշակերտները։ Սկսվում է աշխատանքային օրը, և ամեն անգամ ես տեսնում եմ, թե ինչպես ջերմորեն է առկայծում մրցության կրակը։ Առաջին իսկ քայլից նրանք դաստիարակվում են դեպի աշխատանքը, դեպի իրենց ընկերները, վարպետն ունեցած հարգանքի ոգով։ Տեղամասի կյանքի ամբողջ բնույթը օժանդակում է այդ բանին։

Երբեմն մեզ մոտ դաստիարակությունը միակողմանի են հասկանում։ Բանվորին հիշեցնում են՝ մի՛ խմիր, մի՛ գործալքիր, մի՛ ուշանա, խոտան թույլ մի՛ տա։ Իսկ իմ կարծիքով գլխավորն այն է, որ լավի, պայծառի, անաղարտի նկատմամբ այնքան սեր դաստիարակվի, որպեսզի կեղտոտն ու վատը մարդկանց մեջ բնական զզվանք առաջացնի։

Ես արդեն պատմեցի Բուսիգինի մասին։ Գիտեմ, այդպիսինին չես շեղի ոչ դեպի հարբեցողությունը, ոչ դեպի խուլիգանությունը։ Արկադի Գորելկինին, որը դաստիարակված է դեպի ստեղծագործությունը, դեպի վարպետությունը հարգանք տածելու ոգով, ստիպել էլ չես կարող, որ խոտան արտադրի։

Իմ նոր աշակերտը՝ Վալենտին Նիկիտինը, արդեն կես տարի աշխատում է։ Նրան աշխատանքային ձևեր եմ սովորեցնում, գիտելիքներ տալիս արտադրության տեխնոլոգիայից։

Իսկ գլխավորը՝ ձգտում եմ, որ նա հասկանա աշխատանքի գեղեցկությունը, հավատա բանվորական ձեռքերի ուժին ու կախարդությանը, դառնա կոմունիզմի իսկական կառուցող։ Եվ նորից թռուցիկ զրույցներ, գոտեպնդում խոսքով, հայացքով, երբեմն էլ հանդիմանություն։ Մեր հաճախակի հյուրն է Վալենտինի հայրը՝ գործարանի նախկին դարբինը, ներկայումս թոշակառու։ Նա էլ հայրաբար մեկ կհանդիմանի, մեկ կգովի պատանուն։ Դե ասենք, տեղամասի բոլոր բանվորներն էլ հետաքրքրվում են Վալենտինի հաջողություններով, օգնում նրան։ Այսպես է ընթանում առաջին հայացքից ոչ միշտ նկատելի գործը՝ կերտվում է մարդը, կոփվում բնավորությունը։

... Նորից ձեռքս եմ վերցնում Բուսիգինի նամակը։ Ո՛չ, վատ չի մեր երիտասարդությունը, դե ասենք բոլոր բանվորներն էլ վատ չեն։ Հարկավոր է միայն յուրաքանչյուրի մեջ տեսնել ու հարգել մարդուն, ամեն մեկի համար ունենալ հրաշագործ բանալին՝ սրտակցություն։

Վերջերս մենք բոլորս խոր ուշադրությամբ կարդացինք Վ. Ի. Լենինի նոր փաստաթուղթը՝ «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածի նախնական վարիանտը։ Իմ կարծիքով, յուրաքանչյուր ագիտատոր այդ հոդվածի վրա պետք է լավ միտք անի։ Մեզ հատկապես կարևոր են Վլադիմիր Իլյիչի ցուցումները ագիտացիոն աշխատանքի էության մասին։

«Աշխատավորների և շահագործվող մասսաների մեջ,— ասվում է հոդվածում,— ավելի շատ կազմակերպչական տաղանդներ և ընդունակություններ կան, քան ագիտատորական տաղանդներ ու ընդունակություններ, որովհետև այդ դասակարգերի աշխատանքային կյանքի ամբողջ դրվածքը նրանցից ավելի շատ հմտություն էր պահանջում կարգավորելու համատեղ աշխատանքը, հաշվառումը և վերահսկողությունը արտադրության ու մթերքների բաշխման վրա։ Ընդհակառակն, կյանքի նախկին պայմանները շատ ավելի քիչ չափերով էին իրենց՝ մասսաներից առաջ քաշում ագիտատորի կամ պրոպագանդիստի տաղանդով գործիչներ։ Գուցե այդ է պատճառը, որ մենք այժմ այնպես հաճախ ենք տեսնում, երբ մասնագիտությամբ կամ կոչումով ագիտատորները ստիպված են իրենց վրա վերցնել կազմակերպչի խնդիրները...»։

Կոմունիստական շինարարության պրակտիկան նոր ուժով հաստատում է լենինյան







խոսքերի մեծ կենսունակությունը և արդարացիությունը։ Մինչև այսօր էլ մեր ագիտացիային երբեմն հատուկ են այն թերությունները, որոնք մատնացույց էր անում Վլադիմիր Իլյիչը։

Ստալինի անձի պաշտամունքի շրջանում ագիտացիան հաճախ անջատում էին առօրյա հոգսերից, կազմակերպական աշխատանքից։

Այժմ պարտիան ագիտացիային, ինչպես և ամբողջ գաղափարական աշխատանքին, վերադարձրել է նրա լենինյան բնույթը։ Բայց դեռ այժմ էլ ոմանք ագիտատորների վրա նայում են որպես հասարակ զրուցակիցների, թերթեր կարդացողների, «մաքուր» լուսավորիչների վրա։ Ահա թե ինչու այնպես հրատապ է հնչում Վ. Ի. Լենինի ցուցումը՝ «Նորից սովորել այնպես, որպեսզի պրակտիկ ագիտատորը գրավի իրեն արժանի առաջին տեղը...»։

Պրակտիկ ագիտատորն իմ կարծիքով ագիտացիոն և կազմակերպական տաղանդի կենդանի մարմնացումն է։ Այ եթե մեզանից յուրաքանչյուրն այդպիսի տաղանդ ունենար։ Իմ օրինակով եմ դատում. շատ բերկրալի է տեսնել, որ քո խոսքը նպատակակետին է



հասել։ Իսկ եթե խոսքը գործով ամրապնդես, ապա արդեն շատ ավելի լավ կստացվի։

Կոմունիզմի համար կատարած ամենօրյա աշխատանքում ես տեսնում եմ իմ ուրախությունը, իմ երջանկությունը... Եվ ագիտատորի կոչումն ինձ համար ոչ թե բառ, ոչ թե «ծանրաբեռնվածություն» է, այլ մեծ, պատվավոր գործ։

Մեր ցեխային ագիտկոլեկտիվի ղեկավար փականագործ Ալեքսանդր Իոսիֆովիչ Շևչենկոն գտնում է, որ արտադրության մեջ ագիտացիա պետք է անել յավորակ արտադրանքի թողարկմամբ։ Ես համաձայն եմ։ Մեր ագիտատորների մեծ մասը մարդկանց ոգեշնչում, համոզում են իրենց հարվածային աշխատանքով, սրտակից, հուզող զրույցներով։ Իսկ զրույցներից բացի կա նաև ամենօրյա, ամենժամյա, «անտեսանելի» ագիտացիա։ Տեսնում եմ, օրինակ, որ փականագործ Կոկոնինի մոտ գործը գլուխ չի գալիս, նրան եմ մոտենում կատակով, ժպտալով։

— Ի՞նչ ես տրտմել, ծովային։

— Դե ահա, հղկիչը բռնվել է...

Ներվայնանում է մարդը, քիչ է մնում թևաթափ լինի։

Օգնում եմ խափանումը վերացնելու։ Մի բոպեի գործ է, ոչ մեծ օգնություն, իսկ Կո-

կոնյինը «աշխուժացավ», սկսեց ավելի ուրախ աշխատել։

Ես այս էլ հենց համարում եմ «անտեսանելի» ագիտացիա, որի մեջ զուգորդվում է դաստիարակչական և կազմակերպական աշխատանքը։

Բանվորները գործի մարդիկ են։ Նրանք դատարկախոսություն չեն սիրում։ Կարելի է շատ համառորեն կոչ անել բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։ Իսկ մե՞ծ կլինի արդյոք այդ կոչերի օգուտը, եթե դրանք չամրապնդվեն կազմակերպչորեն։

Մենք մեզ մոտ, օրինակ, մշակել ենք արտադրության կատարելագործման կոմպլեքսային պլան և այն արդեն կիրառում ենք։ Նեղվածք էր, դազգահները նոր ձևով վերադասավորեցինք։ Վերամշակման աշխատանքների համար տեղակայեցինք խառատի և գայլիկոնող հաստոցներ։ Զգում ենք, որ մեզ սրոցաքար տան, մտածում ենք հղկման տեղամաս կազմակերպել։

Ինձ որպես ագիտատորի, ուրախալի է, որ հաջողվեց արթնացնել և կազմակերպել կոլեկտիվ միտք։ Իսկ այժմ բոլորս միասին մտածում ենք կատարելագործումների վրա, միասին ձգտում ենք կենսագործել դրանք։



Այդ միշտ չէ, որ հեշտությամբ է հաջողվում ընդհարումներ մեխանիկի հետ, խոսակցություն պարտքյուրոյում, պարտկոմում, ցեխի պետի մոտ... Բայց վերջին հաշվով մեզ համարյա միշտ էլ հաջողվում է նպատակներիս հասնել։ Եվ ամեն անգամ ես տեսնում եմ, որ ագիտատորի խոսքի կշիռը դրանից նկատելիորեն մեծանում է։

Մեր տեղամասը համարվում է առաջավոր, կարմիր դրոշ է շահել։ Արտադրության կատարելագործումից օգուտ է գալիս և մեզ և ցեխին։ Բայց ահա մի քանի տեղամասերում այլ կերպ է լինում։ Այնտեղ ղեկավարները լավ են յուրացրել այն ճիշտ միտքը, որ աշխատանքի արտադրողականության աճը պետք է նախորդի աշխատավարձի աճին, բայց արտադրության կատարելագործման ուղղությամբ էական միջոցառումներ չեն ձեռնարկում։ Ցեխում քիչ են հոգ տանում տեխնիկայի կատարելագործման մասին, վատ է տարածվում առաջավոր փորձը, նորարարներին ոչ միշտ են օգնում։

Մեր բանվորների մեծամասնությունը բարձր գիտակցություն են հանդես բերում։ Եվ աշխատանքի արտադրողականության բարձրացման նշանակությունը նրանք լավ

են հասկանում։ Բայց, ասացեք, նրանք լավ
տրամադրություն կունենա՞ն, եթե մի քանի
ղեկավարներ խախտում են ցուցումն այն
մասին, որ նախքան արտադրանքի նորմա-
ները բարձրացնելը հարկավոր է հայտնա-
բերել արտադրության չօգտագործված ռե-
զերվները, կիրառել համապատասխան
տեխնիկական կատարելագործումներ և
կազմակերպչական միջոցառումներ։

Ցեխի նախկին պետ Սպասսկին հոգ չէր
տանում այն մասին, որպեսզի բարելավվեն
բանվորների կենցաղային պայմանները։
Հանդերձարանները կեղտոտ էին, աչքաթող
արված։ Ճաշարանը հիմա էլ կուչ է եկել
մի նեղ տեղում։ Նոր պետ Գ. Ա. Ուրինը
շատ է մտածում բանվորների մասին, ուշա-
դիր է նրանց կարիքների նկատմամբ։ Հա-
սավ այն բանին, որ կառուցեցին նոր սպա-
սարաններ, սկսվել է ցեխի վերակառու-
ցումը, որի նպատակն է բարելավել աշխա-
տանքի պայմանները և ավելի լավ կազմա-
կերպել արտադրությունը։

Այս ամենը շատ լավ է։ Սակայն բան-
վորները նեղացած են՝ մռայլ է ցեխի ղեկա-
վարը, խուսափում է նրանց հետ հանդի-
պումներ ունենալուց։ Չի լինի, որ անցնի
տեղամասերով, հասարակ լեզվով, սրտա-



բաց խոսի մարդկանց հետ. նա ժողովներին
միշտ չի գալիս, տեղակալին է ուղարկում։
Իսկ պարտիան պահանջում է, որպեսզի
պարտիական, սովետական և տնտեսական
ղեկավարները վերջ տան գաղափարական
աշխատանքի նկատմամբ եղած տգետ վե-
րաբերմունքին, այն երկրորդական գործ
չհամարեն, ամբողջովին պատասխանատու
լինեն կոլեկտիվի գաղափարական-քաղա-
քական և բարոյական վիճակի համար։

Թերևս այս մասին ես այսպես ցավով
չխոսեի, բայց չէ՞ որ աշխարհում միայն
Գ. Ա. Ուրինը չէ, որքան ենք բողոքներ լսել
այն մասին, որ ահա առանձին ղեկավար-
ներ կտրվում են կոլեկտիվից, խորամուխ
չեն լինում բանվորների կարիքների մեջ։
Իսկ չէ՞ որ ներկայիս բանվորը դատող
մարդ է, որի մեջ շատ մեծ է դեպի մարդ-
կային անաղարտ և ջերմ հարաբերություն-
ներն ունեցած ձգտումը։

Մենք չենք կարող, իրավունք չունենք նե-
րելու այդպիսի մեծամտությունը, արհա-
մարհանքը մարդկանց նկատմամբ։ Այդպի-
սի ղեկավարը գոռում է բանվորի վրա մեկ-
երկու անգամ, տեսնում, որ իրեն ոչինչ չե-
ղավ, նա կոպտությունը դարձնում է օրենք։
Ահա այդպես առաջ է գալիս կամայակա-

նությունը, մեծամտությունը․ եթե կուզեք՝ գյադայությունը։ Մեզ, կոմունիզմ կառուցողներիս համար սազական չէ հաշտվել այդպիսի վարմունքի հետ։

Բերեմ այսպիսի օրինակ։ Մեր ցեխում պլանավորող էր աշխատում Մ. Ն. Կրյուկովան՝ կարելի է ասել ցեխի սանուհին։ Ես նրան մի երեսուն տարի է, ինչ գիտեմ։ Խառատ էր, աշխատել է նաև ուրիշ տեղամասերում, հիանալի կերպով ուսումնասիրել է արտադրությունը, առանց արտադրությունից կտրվելու ավարտել տեխնիկումը։ Ի՞սկ գնահատելը, չգնահատեցին նրան…

Ավարտելով տեխնիկումը․ նա խնդրեց, որ իրեն նշանակեն տեխնոլոգ։ Ի դեպ, ազատ տեղ էլ կար․

— Թույլ տվեք ադմինիստրացիային գիտենալ, թե ձեզ որտեղ է ավելի լավ օգտագործել․— չոր պատասխանեց Ուրինը։

Եթե խորհրդածեր նա ցեխի աշխատողների հետ, թե ինչպիսին է Կրյուկովան, ինչպես հարկն է խորամուխ լիներ նրա խնդրանքի մեջ, կարծում եմ, որ պատասխանը այլ կլիներ։ Բայց Ուրինը այդ չարեց։ Եվ Կրյուկովան հեռացավ։ Հեռացավ «սեփական ցանկությամբ»․ ճիշտ այնպես, ինչ-



պես «սեփական ցանկությամբ» հեռացել էին ուրիշ մի քանի բանվորներ։

Կամ ահա ևս մի դեպք։ Գործիքային ցեխում ժողով էր։ Ելույթ ունեցավ ցեխի պետը։ Հետո խոսք վերցրեց մի երիտասարդ բանվորուհի։

— Ահա դուք մեզ կոչ եք անում բարձր պարտավորություններ ստանձնել,— ասաց նա,— Բայց չէ՞ որ դա ոչ միայն բանվորներից է կախված։ Իսկ ո՞վ է հոգ տարել աշխատանքի պայմանների բարելավման համար, ցեխի ղեկավարներից ո՞վ է մտածել վերացնել այն թերությունները, որոնք խանգարում են մեզ… Նրան որպես պատասխան լսվեց կոպիտ բղավոցը․

— Դա ձեր գործը չէ, միք խծկվի։

«Ձեր գործը չէ»— ինչպե՛ս էլ ասում են։

Այսպիսի բղավոցից հետո ելույթ ունենալ ցանկացողներ այլևս չգտնվեցին։

Ո՛չ, դեռևս ոչ բոլորն են հասկացել․ թե իրար նկատմամբ ունեցած մեր հարաբերություններում որքան կարևոր է սրտացավությունը։ Եվ այս բանում ղեկավարներին հատուկ պահանջ է ներկայացվում։ Նրանք, որպես կանոն, և՛ փորձով են ավելի հարուստ, և՛ գիտելիքներ ավելի շատ ունեն, քան շարքային բանվորները։ Բայց ահա հո-

գեկան հարստությունը մի քանիսի մոտ պակասում է։ Մեկ ուրիշն էլ կարծես մի տեսակ շքեղություն է համարում իր համար, երբ ոչ թե առատաձեռնություն, այլ հոգեկան ժլատություն է ցուցաբերում։

Ինձ պատմել են, որ մի դասախոսության ժամանակ երկտող են ուղարկել։ Նրանում երկու այնպիսի հարց կար, որպիսիք ընդունված է սուր անվանել։ Եվ ինչ եք կարծում, դասախոսը միայն պարզաբանե՞ց այդ հարցերը։ «Այս գրված է դեմագոգի կողմից» —երկտողը թափահարելով ասաց նա։

Դասախոսը ամբիոնից հեռացավ լիակատար վստահությամբ, որ ինքն իրավացի է։ Իսկ ես այդպիսիներին մոտ էլ չէի թողնի ամբիոնին։ Նա իր անմիտ պատասխանով ամեն մի դեմագոգից ավելի վնաս հասցրեց։

Մենք բոլորս, կոմունիստներս և անկուսակցականներս, շարքայիններս և ղեկավարները ընկերներ ու գաղափարակիցներ ենք, մենք բոլորս կատարում ենք մեկ ընդհանուր մեծ գործ՝ կառուցում ենք կոմունիզմ, մի բանի մասին ենք հոգ տանում՝ ինչպես անել, որպեսզի գործերը լավ գնան գործարանում, սովխոզում կամ կոլտնտեսությունում։ Ուրեմն կարելի՞ է թույլ տալ, որ թեկուզ ամենաբարակ պատը անջատի մեզ, որ



մի անձնավորություն, միայն իր պաշտոնական դիրքի շնորհիվ, իրեն հաշվետու չհամարի կոլեկտիվի առջև, մոռանալով այն մասին, որ պարտավոր է մյուս բոլորի համար լինել ընկեր, բարեկամ և եղբայր։

Ճիշտ է ասել Մայակովսկին՝ Լենինգրադում, ինչպես և Մոսկվայում, «ամեն մի քար գիտե Լենինին»։ Որքան անմոռանալի հանդիպումներ են ունեցել այստեղ բանվորներն իրենց առաջնորդի հետ։ Ժողովրդի իսկական սիրելիներն էին Կիրովը և Կալինինը։ Նրանք հենց այնպես գալիս էին նաև մեր Բալթիական գործարանը, լինում ցեխերում, սրտակից զրույցներ ունենում բանվորների հետ։ Վերջին տարիներին մեր գործարանում երկու անգամ եղել է հավատարիմ լենինյան Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը, որը սերտորեն կապված է ժողովրդի հետ, վարպետությամբ տիրապետում է մարդկանց հետ սրտակից զրուցելու արվեստին։

Եվ տարօրինակ է թվում, թե ինչից է, որ պարտիական ու տնտեսական առանձին ղեկավարներ խուսափում են ժողովրդի հետ հանդիպումներ ունենալուց։ Պարտկոմի քարտուղարը, գործարանի դիրեկտորն էլ հենց այնպես չեն գալիս ցեխ... Իսկ ես բոլորովին էլ չեմ հիշում, որ մեզ մոտ եկած լինեն

պարտիայի շրջկոմի ու քաղկոմի քարտուղարները, շրջանային կամ քաղաքային գործկոմների նախագահները։

«Պրավդա» թերթում վերջերս երևաց մի հետաքրքրաշարժ հոդված՝ «Եգորևյան նստարանների վրա», իսկ հետո էլ՝ նրա արձագանքները։ Դրանցում խոսվում է այն մասին, որ և՛ շարքային ագիտատորները, և՛ ղեկավարները համառորեն դաստիարակչական աշխատանք տանեն բնակչության մեջ, չխուսափեն նաև այնպիսի տեղերից, ինչպիսիք են «Եգորևյան նստարանները»։ Դա շատ ճիշտ է, և ահա թե ես միայն ինչ եմ ուզում ավելացնել՝ մեր հանդերձարանները, մեր հանրակացարանները նույնպես «նստարաններ» են։ Եկեք մեզ մոտ, ասում ենք մենք մեծ և փոքր ղեկավարներին։ Ամեն մեկըն ուզում է ավելի հաճախ լսել պարտիական կենդանի, իրավացի, ջերմ սրտակից խոսք։



Վերջերս իր աշխատանքն ավարտեց Հարազատ Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Նոյեմբերյան պլենումը։ Լենինյան Կենտկոմի յուրաքանչյուր պլենում կարծես մի լուսարձակ լինի, որի



լույսի ներքո ավելի պայծառ են երևում մեր հաջողությունները, թերությունները, երևում են մեր կյանքի մոտակա և հեռավոր հեռանկարները։

Ի՞նչ կուզեի ասել ես, բանվոր կոմունիստս այս հուզիչ օրերին։ Մենք միշտ ընթացել ենք և կգնանք մեծ Լենինի նշած ուղիով։ Մեր բոլոր մտահղացումները, մեր ձեռքերը, մեր սիրտը քեզ հետ է, պարտիա։ Չկա ավելի թանկ բան, քան քո մասնիկը լինելու գիտակցությունը, քան քո ղեկավարությամբ ամենավեհ շենքը՝ կոմունիզմ կառուցելը։

Նոյեմբերյան պլենումի մասին մտորումներն ինձ ստիպեցին այլ կերպ նայել և ինձ վրա որպես ագիտատորի, և այն բանին, թե մեզ մոտ ինչպես է տարվում մարդկանց դաստիարակությունը։ Ինչ խոսք, որ դաստիարակչական աշխատանքում ավելի նորանոր, առավել գործուն, կենդանի ձևեր են հանդես գալիս։ Մեզ մոտ, Լենինգրադում, մետաղագործական փործարանում, օրինակ, ստեղծված են կոմունիստական աշխատանքի փորձի՝ երկրում առաջին դպրոցները։ Դրանք նախատեսված են առավելապես երիտասարդ և նորեկ բանվորների համար։ Դպրոցներում մեծ ուշադրություն է նը-

վիրվում աշխատանքային և ռևոլյուցիոն տրադիցիաներով դաստիարակելուն, պրոպագանդվում են քաղաքական և տեխնիկական գիտելիքներ։ Այստեղ հաստոցի մոտ տեղի ունեցող փորձի փոխանակումը զուգորդվում է բարոյականության վերաբերյալ զրույցների հետ, կոնկրետ էկոնոմիկայի վերաբերյալ դասախոսությունները ուրիշ գործարաններ և թանգարաններ կատարած էքսկուրսիաների հետ։ Այդպիսի դպրոցներ կան նաև մեզ մոտ։

Սակայն նման դպրոցների, ժողովրդական համալսարանների, ինչպես նաև մասսայական-քաղաքական աշխատանքի այլ ձևերի զարգացումը, իմ կարծիքով, ոչնչով չի փոքրացնում ագիտատորների դերը։ Այդպիսին է մեր ոչ հեշտ, բայց պատվավոր պարտքը՝ լինել մարդկանց զանգվածի մեջ, ամենուրեք, և արտադրության մեջ, և կենցաղում, տրամվայում ու դաշտում. ամենուրեք լինել կոմունիստական սկզբունքների մարդկային բարձր գաղափարների մարտիկը՝ Ահա թե ինչու ուզում ես, որ պարտիական կազմակերպություններն ավելի շատ հոգ տանեն ագիտատորների ընտրության ու նրանց դաստիարակության մասին։

Իսկ մեզանում երբեմն ագիտատորներն



էլ ընտրում են ձևականորեն՝ գրագետ է՝ դե ուրեմն տուր այստեղ, պիտանի է։ Հրահանգավորումն էլ առիթից առիթ են տալիս նրանց։ Սեմինարները անց են կացնում ոչ կանոնավոր կերպով, հաճախ անհամ ձևով, համարյա չբացահայտելով ագիտացիայի մեթոդիկան։ Որպեսզի դաստիարակչական աշխատանքից ամբողջովին դուրս մղվի ֆորմալիզմն ու ձևամոլությունը, իմ կարծիքով, հարկավոր է սկսել հենց դրանից՝ սովորել հմտորեն, սիրով աճեցնել իսկական ագիտատորների, բարձրացնել նրանց նկատմամբ եղած պահանջկոտությունը, ձգտել հասնելու քաղաքական աշխատանքի սրտին մոտ ու ներգործուն լինելուն։

Դաստիարակչական աշխատանքի մասշտաբները ներկայումս անչափ ընդլայնվել են։ Շատերը, հատկապես երիտասարդ ագիտատորները, ցանկանում են իմանալ, ինչպես ավելի լավ կազմակերպել առաջավոր փորձի պրոպագանդան, բարձրացնել զրույցների ներգործուն լինելը, ինչպես մարդկանց բանվորական հպարտություն ներարկել և այլն։

Ես գիտեմ, մեր լավագույն ագիտատորները ասելու շատ բան ունեն, շատ բան կարող են հուշել իրենց ընկերներին։

*Ես կուզենայի, որ բոլոր նրանք, ովքեր կկարդան այս տողերը, արձագանքեն. ասեն իրենց մտքերը ագիտատորների պարտքի ու խղճի մասին, այն մասին, թե ինչպես անել, որ նրանց ներդրումը մեր ընդհանուր կոմունիստական կաթսայի մեջ ավելի շատ, ավելի ծանրակշիռ լինի։*

*Այդպիսի խոսակցությունը օգտակար է, դա կնպաստի այն բանին, որպեսզի մեզանից, ագիտատորներից յուրաքանչյուրը, որն արժանացել է պարտիայի բարձր վստահությանը, դառնա կանխատես, կարողանա բացահայտել ու բազմապատկել մարդկային հոգու ռեզերվները։*

## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

Տպագրելով Լենինգրադի Սերգո Օրջոնիկիձեի անվան Բալթիական նավաշինարարական գործարանի ագիտատոր, փականագործ Ն. Սորոկինի հոդվածը «Ագիտատորի պարտքի մասին», խմբագրությունը խնդրում է բոլոր ագիտատորներին, ագիտկոլեկտիվների ղեկավարներին, պարտիական աշխատողներին իրենց կարծիքը հայտնել նրա հոդվածի վերաբերյալ։

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*



# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԹՎԵՐՈՎ ԵՎ ՓԱՍՏԵՐՈՎ

Նոր տարին նոր հաղթանակներ կբերի մեր երկրին։ Սովետական Միության աշխատավորները պանծալի գործերով կնշանավորեն 1963 թվականը՝ յոթնամյակի հինգերորդ տարին։ Դարձյալ նոր և խոշոր քայլ կարվի կոմունիզմի կառուցման ճանապարհին։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

*Այս տարի ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը յոթնամյակի առաջադրանքը կգերազանցի մոտավորապես 7 միլիարդ ռուբլով։ Հինգ տարում կարտադրվի յոթնամյա պլանով նախատեսվածից 35 միլիարդ ռուբլով շատ արդյունաբերական արտադրանք։*

*Յոթնամյակի 5-րդ տարին նշանավոր կլինի նաև նրանով, որ արդյունաբերության գործարկված նոր, հիմնական ֆոնդերի բաժինը կկազմի մոտավորապես 50 տոկոս։ Դրա շնորհիվ մեծ չափերով կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը։*

*Նոր տարում ավելի բարձր զարգացման կհասնի քիմիական արդյունաբերությունը, որի արտադրան-*

քը կավելանա 17 տոկոսով։ 25 տոկոսով կավելանա պլաստմասսայի և սինթետիկ ձյութերի արտադրությունը։ Այս տարի քիմիական արդյունաբերության մեջ 1.7 միլիարդ ռուբլու կապիտալ ներդրումներ կկատարվի։

Յոթնամյակի 5-րդ տարում կավելանա սև և գունավոր մետաղների արտադրությունը։ Այս տարի ՍՍՌՄ-ում կձուլվի ավելի քան 59 միլիոն տոննա չուգուն, 80 միլիոն տոննա պողպատ։

Նոր տարում Սովետական Միությունը կարտադրի 407,9 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, կգործարկվեն այնքան էլեկտրական կարողություններ, որոնք հավասար են տասնհինգ Դնեպրոգէսի կամ այնպիսի չորս հսկաների, ինչպիսին է Վոլգայի Լենինի անվան հիդրոէլեկտրակայանը։ Այս տարի էլեկտրաէներգիայի արտադրությունը կաճի 11 տոկոսով։

Բուռն թափով կաճի վառելիքի արդյունահանումը։ Նավթի արդյունահանումը կավելանա 10 տոկոսով, գազինը՝ 17 տոկոսով։ Այսպիսով վառելիքի արտադրության մեջ նավթի և գազի տեսակարար կշիռը կհասնի 48 տոկոսի, 1958 թվականի 31,8 տոկոսի փոխարեն։ Այս տարի կարդյունահանվի 205 միլիոն տոննա նավթ։

Այս տարի մեքենաշինության և մետաղամշակ-



ման արտադրանքի արտադրության ընդհանուր ծավալը կմեծանա 11,5 տոկոսով։

Թեթև արդյունաբերության զարգացման համար կատարվող կապիտալ ներդրումները այս տարի կավելանան 22 տոկոսով։

Մեր երկիրը 1963 թվականին կարտադրի 6 միլիարդ 600 միլիոն մետր բամբակե գործվածք, 944 միլիոն մետր մետաքսե գործվածք, 365 միլիոն մետր բրդե և 518 միլիոն մետր վուշե գործվածք։

Նոր տարում մեծ չափերով կավելանա սննդամթերքների արտադրությունը։ Մսի արտադրությունը կաճի 10 տոկոսով կամ 440 հազար տոննայով։ Երկրում կարտադրվի ավելի քան մեկ միլիոն տոննա յուղ, որը մեկ ու կես անգամ մեծ է ԱՄՆ-ում յուղի արտադրության ծավալից։ Նախատեսված է որսալ 4 միլիոն 220 հազար տոննա ձուկ։

Յոթնամյակի 5-րդ տարում կապիտալ ներդրումների ծավալը կմեծանա 9,9 տոկոսով և կկազմի 33,5 միլիարդ ռուբլի, որը բարձր է կոնտրոլ թվերի 1963 թվականի հաշվարկներից։

Նոր տարում մեծ աշխատանք կկատարվի տրանսպորտի զարգացման ուղղությամբ։ Կշարունակվի երկաթուղագծերի էլեկտրիֆիկացումը և դիզելային քարշերի օգտագործումը։ Բեռնաշրջանառության ավելի

քան 70 տոկոսը կկատարվի տրանսպորտի այդ առաջավոր տեսակներով։

Վիթխարի շինարարական աշխատանք է կատարվելու այս տարի։ Միայն առանձնապես կարևոր կառույցների թիվը հասնելու է 628-ի։ Շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը մեծանալու է 6,8 տոկոսով։

Նույն ժամանակամիջոցում ցեմենտի թողարկումը կհասնի 63 միլիոն տոննայի։ ՍՍՌՄ-ը ցեմենտի արտադրությամբ շատ առաջ կանցնի ԱՄՆ-ից։ Հավաքովի երկաթբետոնի արտադրությունը կհասնի 44 միլիոն խորանարդ մետրի, որը մոտ է յոթնամյակի վերջին տարվա համար նախատեսված ծավալին։ Բնակարանային շինարարության համար ինդուստրիալ կոնստրուկցիաների և դետալների արտադրությունը կաճի 50 տոկոսով։

Վիթխարի աշխատանք է կատարվելու գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Մեր երկրի գյուղատնտեսության ու մթերումների ֆինանսավորմանը հատկացված է 9,7 միլիարդ ռուբլի։ Գյուղատնտեսությանը պետական հատկացումների ամբողջ գումարը, 1962 թվականի համեմատությամբ, կավելանա 17,8 տոկոսով։

ՍՍՌՄ Պետբանկը երկրի կոլտնտեսություններին կտրամադրի 1.015 միլիոն ռուբլի երկարաժամկետ



վարկեր անասնապահական շինություններ կառուցելու, անասնապահական ֆերմաները մեքենայացնելու և այլ միջոցառումների համար։ Այդ գումարը 160 միլիոն ռուբլով ավելի է 1962 թվականին տրված վարկերի գումարից։

Նոր տարվա ընթացքում մեծ չափով կզարգանան սովխոզները, որոնց կարիքների համար բյուջեի և սեփական միջոցների հաշվին հատկացվում է 5,7 միլիարդ ռուբլի, 675 միլիոն ռուբլով ավելի, քան 1962 թվականին։

Այս տարվա ընթացքում «Սոյուզսելխոզտեխնիկայի» կազմակերպությունները երկրի գյուղատնտեսությանը կմատակարարեն 5,9 միլիարդ ռուբլի ընդհանուր գումարի մեքենաներ, պահեստամասեր, պարարտանյութեր և այլ ապրանքներ, կամ 10,5 տոկոսով ավելի, քան 1962 թվականին։

Պետական կապիտալ ներդրումները գյուղատնտեսության մեջ 1963 թվականին կազմելու են 4,1 միլիարդ ռուբլի, որը նշանակալիորեն բարձր է յոթնամյակի կոնտրոլ թվերից, կամ 18 տոկոսով ավելի, քան 1962 թվականին։

ՍՍՌՄ գյուղատնտեսությունը կստանա 236 հազար տրակտոր, 209 հազար տրակտորային շարքացան, 78 հազար հացահատիկային կոմբայն, մեծ քանակու-

թյամբ սիլոսահավաք կոմբայններ, բեռնատար ավտոմեքենաներ և այլն։

Այս տարի մեր երկրում կմթերվի 4 միլիարդ 200 միլիոնից մինչև 4 միլիարդ 500 միլիոն փութ հացահատիկ։

Այս տարի 20 միլիոն հեկտարով կավելացվեն հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները։

Անասունների և թռչունների գնումները 1963 թվականին կհասցվեն 9,5 միլիոն տոննայի, կամ 14 տոկոսով ավելի, կաթինը՝ ավելի քան 34 միլիոն տոննա, կամ 15 տոկոսով ավելի, քան 1962 թվականին, ձվինը՝ մինչև 9,5 միլիարդ հատ։

Մեծ ուշադրություն է դարձվելու սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման վրա։ Միայն 1963 թվականին մեր երկրի ազգային եկամուտը կաճի 7 տոկոսով։

Անցյալ տարվա համեմատությամբ, 1963 թվականին բնակչության դրամական եկամուտները կաճեն 5,9 տոկոսով։

Ծերության և հաշմանդամության համար տրվող թոշակները կկազմեն 6,4 միլիարդ ռուբլի։ Այժմ ծերու-



թյան և հաշմանդամության համար պետությունից նպաստ են ստանում շուրջ 22 միլիոն մարդ։

Մեր երկրում 1963 թվականին շահագործման կհանձնվի 91 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 9 միլիոն մետրով ավելի, քան 1962 թվականին։

Ընթացիկ տարում գազ կստանան 150 քաղաք և բանվորական ավան։

Այս տարի երկրի հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը կկազմի 41 միլիոն մարդ։

Գիշերօթիկ դպրոցներում և երկարօրյա դպրոցներում աշակերտների թիվը կաճի 500 հազարով և կկազմի 2 միլիոն 500 հազար մարդ։

Մանկապարտեզներում և մանկամսուրներում երեխաների թիվը 1963 թվականին կավելանա 685 հազարով և կկազմի 6 միլիոն 245 հազար մարդ։

Երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում 1963 թվականին կընդունվեն 1.700 հազար մարդ։

Մեր երկրի բնակչությունը 1963 թվականին կստանա 914 հազար սառնարան, 2 միլիոն 220 հազար լվացքի մեքենա և այլն։

ՍՍՌՄ պետական բյուջեից 1963 թվականին կըծախսվի 13,8 միլիարդ ռուբլի ժողովրդական կրթության, գիտության և կուլտուրայի զարգացման վրա, 5,2 միլիարդ ռուբլի՝ առողջապահության և ֆիզկուլտուրայի վրա, 12 միլիարդ ռուբլի պետական սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության վրա, 5,2 միլիարդ ռուբլի բնակարանային շինարարության վրա։

Նոր տարում նոր և վիթխարի հաջողությունների կհասնի նաև Հայկական ՍՍՌ-ն։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը 1963 թվականին, 1962 թվականի համեմատությամբ, կաճի 11,7 տոկոսով։

Քիմիական արդյունաբերության արտադրանքի թողարկումը այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, կաճի 38,8 տոկոսով։ Մեր ռեսպուբլիկան երկրին կտա մեծ քանակությամբ ացետիլցելյուլոզ, ացետատային մետաքս, սինթետիկ կաուչուկ, սինթետիկ ձյութեր և քիմիական արտադրանքի շատ այլ տեսակներ։

Մեր ռեսպուբլիկայում բարձր տեմպերով կզարգանա մեքենաշինությունը, որի արտադրության ծավալը կաճի 15,9 տոկոսով։ Բարձր տեմպերով կզարգանա հատկապես ռադիոէլեկտրոնային արդյունաբերությունը, սարքաշինությունը, ծանր մեքենաշինությունը և այլն։



Այս տարի մեր ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի սպառումը կավելանա 9,7 տոկոսով։ Կգործարկվեն Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանները, կկառուցվեն նոր հիդրոէլեկտրակայաններ ու ջերմաէլեկտրակայաններ։

Հիանալի ցուցանիշների կհասնի մեր ռեսպուբլիկան թեթև և սննդի արդյունաբերության զարգացման բնագավառում։ Այս տարի մեր ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերությունը կթողարկի 73 միլիոն մետր բամբակե, 4,4 միլիոն մետր բրդե, 7,13 միլիոն մետր մետաքսե գործվածքներ, 39,3 միլիոն զույգ գուլպա, 27,2 միլիոն հատ տրիկոտաժեղեն, 6 միլիոն զույգ կաշվե կոշիկ։ Նույն ժամանակամիջոցում 13 տոկոսով կաճի պահածոների, 30 տոկոսով անարատ կաթնեղենի, 34,5 տոկոսով խաղողի գինու, 32,5 տոկոսով անալկոհոլ խմիչքների, 13,5 տոկոսով շաքարավազի արտադրությունը։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ այս տարի կապիտալ ներդրումների ծավալը կհասնի 273,1 միլիոն ռուբլու, այդ թվում շինմոնտաժային աշխատանքներինը՝ 170,2 միլիոն ռուբլու։

Այս տարի բուռն վերելք կապրի Սովետական Հայաստանի գյուղատնտեսությունը։ 1962 թվականի համեմատությամբ, 1963 թվականին գյուղատնտեսական մթերքների և հումքի պետական գնումները կա-

վելանա. հացահատիկ՝ 15 հազար տոննայով, կարտոֆիլ՝ 9 հազար տոննայով, բանջարեղեն՝ 12 հազար տոննայով, միս՝ 1,7 հազար տոննայով, կաթ՝ 25 հազար տոննայով, ձու՝ 7 միլիոն հատով, բուրդ՝ 0,7 հազար տոննայով և այլն։

Այս տարի կոլտնտեսություններում և սովխոզներում նշանակալիորեն կաճի անասունների գլխաքանակը. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 5,4 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 13,7 տոկոսով, ոչխարներինը ու այծերինը՝ 6,7 տոկոսով, խոզերինը՝ 12,1 տոկոսով և թռչուններինը՝ 35,7 տոկոսով։

Ռեսպուբլիկայում խաղողի այգիները 1963 թվականին կընդարձակվեն 1.620 հեկտարով։ Կսկսվի Արարատյան հարթավայրի 30 հազար հեկտարի հասնող աղուտների գյուղատնտեսական իրացման աշխատանքները։

Ռեսպուբլիկայի սովխոզներն ու կոլտնտեսությունները կստանան 1.045 տրակտոր, 100 հացահատիկային և 120 սիլոսահավաք կոմբայն և այլն։

Ռեսպուբլիկայի ազգային եկամուտը այս տարի կաճի 12 տոկոսով։ Բնակչության դրամական եկամուտները, 1962 թվականի համեմատությամբ, կաճեն 8,2 տոկոսով։

Այս տարի պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին շահագործման կհանձնվի 371



հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը 1962 թվականի համեմատությամբ ավել է 14 տոկոսով։ Ընդհանուր առմամբ 1963 թվականին 18 հազար ընտանիքներ կստանան նոր, բարեկարգ բնակարաններ։

Ռեսպուբլիկայի հանրակրթական դպրոցներում 1963 թվականին սովորողների թիվը կհասնի 419,5 հազարի։ Մանկական նախադպրոցական հիմնարկներում երեխաների թիվը կավելանա 5 հազարով։

Մեր ռեսպուբլիկայում 1963 թվականին հիվանդանոցային մահճակալների թիվը կհասնի 16,3 հազարի, 1962 թվականի 15,3 հազարի դիմաց։

Սովետական մարդիկ լենինյան պարտիայի ղեկավարությամբ համակված են անսասան վճռականությամբ՝ ձեռք բերել խոշոր նվաճումներ մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում, ժամկետից շուտ կատարել յոթնամյակի հինգերորդ տարվա պլանները։

# ՍՏԵՓԱՆ ԶՈՐՅԱՆ



Սովետահայ նշանավոր արձակագիր Ստեփան Զորյանը իր առաջին ստեղծագործություններով հանդես եկավ իբրև հայ կլասիկ գրականության ռեալիստական տրադիցիաների շարունակող:

Ստեփան Զորյանի նախասովետական շըրջանի ստեղծագործությունների հիմնական թեման եղել է հայ գյուղի կյանքն ու կենցաղը: 1918 թվականին լույս է տեսնում նրա պատմվածքների և նովելների առաջին ժողովածուն՝ «Տխուր մարդիկ» ընդհանուր խորագրով: «Պատերազմ» և «Խնձորի այգին» պատմվածքների շարքում, որոնք գրվել էին իմպերիալիստական պատերազմի տարիներին, գրողը շոշափում է կյանքի տարբեր երևույթներ:

Հայաստանում դաշնակների տիրապետու-



թյան օրոք Ստ. Զորյանը գրում է «Կրակ» վիպակը, «Ռոմանտիկ պատմություն», «Օհանի մահը» և այլ պատմվածքներ, որոնց մեջ հայ ժողովրդի փրկությունը կապում է սովետական կարգերի հաստատման հետ և իր հայացքը ուղղում դեպի Սովետական Ռուսաստանը:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման հենց առաջին օրերից Ստ. Զորյանի ստեղծագործական կյանքի մեջ սկսվում է մի նոր շրջան: Գրողը ողջունում է նոր իրավակարգը և իշխանությունը, գիտակցելով որ սովետական կարգերը, հարազատ ժողովրդին երջանկություն կպարգևեն: Դրա ապացույցը հանդիսացավ «Հեղկոմի նախագահը» պատմվածքը, որը գրվեց 1923 թվականին:

Սովետական շրջանում ստեղծած Ստ. Զորյանի լավագույն ստեղծագործությունների թվին է պատկանում «Գրադարանի աղջիկը» վիպակը, որի մեջ նկարագրված է Հայաստանի ծանր վիճակը սովետական կարգերի հաստատման առաջին օրերին և բոլշևիկյան պարտիայի հերոսական գործունեությունը աշխատավորների ռևոլյուցիոն պայքարի կազմակերպման գործում:

ՕԳՏԱԿԱՐ Է ԻՄԱՆԱԼ

## ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

Առանց գրքի չկա գիտություն, առանց գիտության չկա կոմունիզմ։

Վ. Ի. Լենին

Ընթերցանություն։ Ահա լավագույն ուսուցիչը։

Ա. Ս. Պուշկին

Գիրքը մի սերնդի հոգևոր կտակն է մյուսին... Անհետացել են ցեղեր, մարդիկ, պետություններ, իսկ գիրքը մնացել է։ Այն մնացել է մարդկության հետ։

Ա. Ի. Գերցեն

Սիրեցեք գիրքը՝ գիտելիքների աղբյուրը։ Միայն նա կարող է դարձնել մեզ հոգեպես ուժեղ, ազնիվ, խելացի մարդ, որն ընդունակ է անկեղծ սիրել մարդուն, հարգել նրա աշխատանքը, ի սրտե սքանչանալ նրա մեծ անընդմեջ աշխատանքի գեղեցիկ պտուղներով։

Մ. Գորկի

Գիր սիրե, ղալամ սիրե, դավթար սիրե...

Սայաթ-Նովա

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

*Ուսումը գիտության զավակն է, առատությունը՝ ուսման զավակը։*

*Երբ ուտում ես՝ ծամիր, խոսում ես՝ մտածիր։*

*Ավելի լավ է վերջինը լինել առյուծների մեջ, քան առաջինը՝ չախկալների մեջ։*

*Ածուխը լվանալով չի սպիտակի։*

*Ծույլի համար ամեն օր կիրակի է։*

## ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Խաղողի հյութը պարունակում է 10—30 տոկոս շաքար, 0,5—1,4 տոկոս թթուներ, 0,9—0,15 տոկոս սպիտակուցային նյութեր, 0,9—0,15 հանքային և այլ նյութեր։*

*Մինչև վերջերս կարծում էին, թե երկրագնդի ամենացուրտ վայրը Վերխոյանսկ քաղաքն է, որտեղ ցրտերը հասնում են մինչև 69,8 աստիճանի, այնինչ Օյմյակոն վայրն է, որը 700 կմ. հեռու է Վերխոյանսկից և որտեղ ցրտերն հասնում են 71 աստիճանի։*

*Ամենափոքր մոլորակներն են՝ Ցերերան, Պալլադան, Յունոնան, Վեստան, Էրոսը, Հիդալգոն, Հանիմեդը, Հերմեսը, Իկարը։*

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы
бюро ЦК КП Армении по
руководству промышленностью и
строительством

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 1 1963 г.

ՎՖ 09808 Պատվեր 895 Տիրաժ 8216

Հանձնված է արտադրության 30/XII 1962 թ.
Ստորագրված է տպագրության 8/I 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։